

# ԷՐԵԲՈՒՆԻԻ ՈՐՄՆԱՆԿԱՐՆԵՐԸ

КОНСТАНТИН ОГАНЕСЯН

# РОСПИСИ ЭРЕБУНИ



ИЗДАТЕЛЬСТВО АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1973

ԿՈՍՏԱՆԴԻՆ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

# ԷՐԵԲՈՒՆԻԻ ՈՐՄՆԱՆԿԱՐՆԵՐԸ



ՀՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1973
Printed in the Soviet Union





այաստանը հնամենի մշակույթի երկիր է: Դարերի խորքից եկող նրա բազմաբեղուն կյանքը նշանավորված է եղել բուռն վերելքի և անկման ժամանակաշրջաններով, որոնց ընթացքում ստեղծվել են մշակույթի բազմաթիվ հուշարձաններ: Այդ մշակույթը Հայաստանի պատմության բոլոր դարաշրջաններում ընթացել է հարաճուն զարգացման ու վերելքի ուղիով: Իրար հաջորդող մշակույթների ժառանգական կապի շնորհիվ ստեղծվել են դրանց նշանակալի արժեքները, սկսած նախնադարյան հասարակարգի հուշարձաններից մինչև հին արևելյան ավանդույթները, և դասական ու ժողովրդական արվեստի ստեղծագործությունները:

Մ. թ. ա. II հազարամյակի վերջերին Հայկական լեռնաշխարհում բնակվող Նաիրի ցեղային միավորումից առանձնանում է Ուրարտուն, հետագայում դառնալով Հին Արևելքի հզոր պետություններից մեկը: Այդ կազմավորումը աորեստանյան անվանու-

մով կոչվում էր «Ուրարտու», իսկ բնիկների լեզվով՝ «Բիայնիլի» և ընդգրկում էր Վանա լճի շրջակայքի տարածությունը: Լճի արևելյան ափին, այժմյան Վան քաղաքի սահմաններում, գտնվում էր պետության մայրաքաղաքը՝ Տուշպան:

IX դարի կեսերից Առաջավոր Ասիայում Ուրարտուի դիրքն այնքան է ուժեղանում, որ մինչև անգամ Ասորեստանն իր հզորությամբ սկսում է զիջել նրան:

Երկար ժամանակ Ուրարտուի մասին եղած պատկերացումների հիմնական աղբյուրը գրավոր հուշարձաններն էին, հատկապես ասորեստանյանները, սակայն վերջին երեսուն տարիներին Հայկական ՍՍՀ տարածքի վրա կատարված հնագիտական պեղումները առատ նյութ են տալիս այդ հնագույն պետության մշակույթի մասին:

Լայն ծավալ ստացած պեղումները հնարավորություն ստեղծեցին համգամանորեն ուսումնասիրելու հին ուրարտական այն քաղաքները ու բնակավայրերը, որոնք հայտնաբերվել են Արինբերդ (հին Էրեբունի), Կարմիր բլուր (Թեյշեբայինի), Արմավիր և Դավթի սար (Արգիշտիխինիլի) բլուրների շրջակայքում, ինչպես նաև այժմյան Արագած, Էլար (Դար-Անի), Ծովինար (Թեյշեբա աստծու քաղաքը) գյուղերի սահմաններում և այլուր:

Այդ քաղաքների մշակույթը լուսաբանող հնագիտական նյութերի հետ միասին հայտնաբերվել են նաև ուրարտական վիմագրության բազմաթիվ հուշարձաններ, որոնք արժեքավոր տեղեկություններ են հաղորդում Ուրարտուի՝ մ. թ. ա. VIII—VII դարերի պատմության մասին:

Այդ ժամանակաշրջանի քաղաքներից առավել նշանակալից է եղել Արին-բերդ բլրի շուրջը տարածված Էրեբունին: Քաղաքը բարձրացել է Երևանի հարավ-արևելյան ծայրամասում՝ Նոր-Արեշ և Վարդաշեն թաղամասերի միջև, որտեղ պահպանվել են հզոր ամրոցի ավերակները:

Պեղումների ընթացքում ամրոցի տարբեր կողմերում գտնվել են 23 սեպագիր արձանագրություններ, որոնք պատկանել են ուրարտական թագավորներին (Արգիշտի Ա, Սարդուրի Բ և Ռուսա Գ): Նրանցում հիշատակված են Ուրարտուի թագավորների շինարարական գործունեության, փառահեղ պալատի, տաճարների և հացահատիկի ու այլ գյուղատնտեսական մթերքների պահպանման համար բազմաթիվ շենքերի կառուցումների մասին:

Պեղումների ժամանակ հայտնաբերված նույն բովանդակությամբ երկու սեպագրեր նվիրված են քաղաքի հիմնադրմանը.

Արձանագրության մեջ ասված է. «Խալդի աստծու մեծությամբ Արգիշտին, Մենուայի որդին այս հզոր բերդը կառուցեց. նրա համար սահմանեցի Էրեբունի անունը. Բիայնիլիի երկրի հզորության համար և թշնամի երկրներին ի սարսափ: Արգիշտին ասում է, երկիրը ամայի էր, հզոր գործեր ես այնտեղ կատարեցի, Խալդի աստծու մեծությամբ Արգիշտի, Մենուայի որդի, թագավոր հզոր, թագավոր Բիայնիլիի երկրի, տերը Տուշպա քաղաքի»:

Հետագայում այս բնագրերի և Վանի շրջանում հայտնաբերված Խորխորյան նշանավոր տարեգրության համադրությամբ

որոշվեց նաև քաղաքի հիմնադրման ստույգ ժամանակը՝ Արգիշ-տի Առաջինի գահակալության 5-րդ տարին: Էրեբունի ամրոցը Արաքս գետից հյուսիս, Արարատյան դաշտում կառուցված առաջին խոշոր կառույցն է, որն այդ ժամանակ Վանի շրջանից հետո երկրի երկրորդ՝ տնտեսական, վարչական ու քաղաքական կարևոր կենտրոնն էր: Բացի այդ, ամրոցը դեպի հյուսիս կատարվող արշավանքների ժամանակ ծառայում էր իբրև արքայական նստավայր, որին ուրարտական թագավորները շատ մեծ նշանակություն էին տալիս: Հենց այդ նպատակով էլ ամրոցում տեղաբաշխված էր զինվորական հզոր կայազոր, իբրև պետության հյուսիսային սահմանների պատվար՝ «թշնամի երկրներին ի սարսափ»:

Արգիշտի Ա-ի ժամանակ Արարատյան դաշտավայրը, Արագած լեռան լանջերը և Սևանի ավազանի մի մասն արդեն հաստատապես միացված էին Վանի թագավորությանը, որը վաղուց էր ձգտում նվաճել Արաքսի հովտի արգավանդ հողերը և լեռնային հարուստ շրջանները:

Այդ ուղղությամբ առաջին նվաճումները ձեռք բերվեցին դեռևս Մենուայի օրոք, երբ վերջինս համառ պայքար մղելով տեղական ցեղերի դեմ, դուրս եկավ Արաքսի հարավային ափերը և Արագածի լանջերը: Այստեղ Մենուան կառուցեց մի ամրոց, հավանաբար իբրև ռազմահենադաշտ՝ գալիք արշավանքների համար, և այն իր անունով կոչեց Մենուախինիլի: Այդ արշավանքներն ավելի լայնորեն ծավալվեցին նրա որդու՝ Արգիշտի Ա-ի թագավորության տարիներին, երբ Ուրարտուն հասել էր իր հզորության ամենաբարձր աստիճանին:

Հենց այս ժամանակ են տեղի ունենում այդ տարածությունների նվաճումը և արագ յուրացումը, աշխատանքներ են կատարվում նրանց բարեկարգման, առաջին հերթին բնակավայրերի կառուցապատման, երկրագործության համար ոռոգող ջրանցքների անցկացման ուղղությամբ և այլն:

Էրեբունիի հիմնադրումից վեց տարի անց անհրաժեշտություն է առաջանում Արաքսի հովտում ստեղծելու նոր, վարչատնտեսական խոշոր կենտրոն: Այն կառուցվում է Արմավիրի բլրի շրջակայքում և անվանվում Արգիշտիխինիլի, որը շարունակում է ընդարձակվել Արգիշտիի որդու՝ Սարդուրի Բ-ի օրոք:

Մ. թ. ա. VII դարում Ազա երկրի այս շրջանում երևան է գալիս ուրարտական մի նոր ամրոց, որն իր անունը ստանում է ամպրոպի, կայծակի և պատերազմի աստծու՝ Թեյշեբայի անունից: Ամրոցը հիմնադրել էր Ռուսա թագավորը՝ Արգիշտի Բ-ի որդին: Թեյշեբայինիի ավերակները բացվեցին Կարմիր բլուրի վրա՝ Երևանի հարավ-արևմտյան ծայրամասում:

Հարկ է նշել, որ Էրեբունիի և Թեյշեբայինիի պատմական ճակատագրերը սերտորեն միահյուսված են եղել: Նրանց փոխադարձ կապերի արտահայտություններից մեկը հայտնի դարձավ Թեյշեբայինիի պեղումների ժամանակ, երբ հայտնաբերվեցին գեղարվեստական բազմաթիվ առարկաներ, որոնք տեղափոխվել էին Էրեբունիի պահեստանոցներից (Խալդի աստծուն նվիրված սաղավարտները, կապարճները, վահանները և այլն):

Վահանների վրա պահպանվել են Արգիշտի Ա-ի արձանագրությունները, որոնք վկայում են, որ դրանք պատրաստվել են հատկապես Էրեբունի քաղաքի համար:

Սպառազենի առարկաների հետ միասին Թեյշեբայինի են տեղափոխվել նաև այնպիսի իրեր, որոնք պատրաստվել են Էրեբունիի հիմնադրման պատվին, այդ թվում՝ աստծու հնամենի արձանիկ՝ զինվորի տեսքով և բրոնզե մանրամասերով (վարսակալ գոտի, սուր, կապարճ, նիզակների ծայր): Արձանիկի մասը կազմող և նրանից 2 մետր հեռավորության վրա գտնված պատվանդանին պահպանվել է մի հետաքրքիր արձանագրություն. «Խալդի աստծուն, իր տիրոջը, այս առարկան Արգիշտին, Մենուայի որդին պատրաստեց, երբ Էրեբունի քաղաքը կառուցվեց»:

Այսպիսով, մեզ հայտնի է Էրեբունի ամրոցում հայտնաբերված բրոնզե առարկաների այն ամբողջությունը, որը գոյություն է ունեցել նրա ծաղկման տարիներին:

Էրեբունին ավելի երկար պահպանեց իր գոյությունը, քան Թեյշեբայինի ամրոցը: Երբ մոտ. 585 թ. (մ. թ. ա.) սկյութական ցեղերի ասպատակությունների ժամանակ այն կործանվեց և հրդեհվեց, Էրեբունի քաղաքում կյանքը դեռևս հարատևում էր: Ուրարտական վերջին թագավոր Ռուսան՝ Էրիմենի որդին, սեպագիր է թողել հացահատիկի շտեմարանների կառուցման մասին: Սակայն այս շրջանի շինարարական աշխատանքները արդեն չունեին այն թափն ու ծավալը, ինչ նկատում ենք ամրոցի բուն ծաղկման ժամանակաշրջանում՝ մ. թ. ա. VIII դարում:

Մ. թ. ա. VI դարում, Ուրարտուի անկումից հետո, երբ այդ շրջանները ենթարկվեցին աքեմենյան Իրանի տիրապետությանը, Էրեբունին դարձավ իրանական սատրապություններից մեկի կենտրոնը:

Այս շրջանում աքեմենյանները արմատական վերակառուցման ենթարկեցին միջնաբերդում գոյություն ունեցող հոյակերտ շինությունները՝ դրանք հարմարեցնելով իրենց պահանջներին: Այսպես, Խալդի աստծու տաճարի վերակառուցմամբ, որի ընթացքում նրա սյունասրահին կից կառուցվում է հանդիսավոր սյունազարդ տարածություն, ստեղծվեց երեսուն սյունավոր խոշոր դահլիճ՝ ապադանան, որը ծառայում էր որպես հանդիսավոր ընդունելությունների վայր: Վերակառուցման են ենթարկվում նաև պալատի կենտրոնական մասը, սյունազարդ բակը և Սուսի տաճարը, որը վերածվում է կրակի տաճարի:

Միջնաբերդի աքեմենյան ժամանակաշրջանից պահպանվել են հնագիտական բնորոշ նյութեր՝ նետերի ծայրեր, սանձեր, ուլունքներ և այլն: Իրերի այս ամբողջությունը թվագրելու համար հատկապես կարևոր են Միլետ քաղաքի արծաթե երկու դրամները, որոնք վերաբերում են մ. թ. ա. V դարին: Հնագիտական նյութերի այս խումբը վերջերս համալրվեց արվեստի նոր ստեղծագործություններով՝ արծաթե ռիտոններով (մ. թ. ա. V դ.), որոնք հայտնաբերվել են Էրեբունի քաղաքի տեղամասերից մեկում: Այդ գավաթները, հատկապես հեծյալի պատկերովը, աքեմենյան դա-

բաշրջանի արվեստի հազվագյուտ առարկաներ են (տախտակներ 55, 56)։

Այսպիսով, Էրեբունին հին ժամանակների այն հազվադեպ հանգուցակետն է, Հին Արևելքի և նրան հաջորդած դարաշրջանի այն սահմանագիծը, որտեղ միահյուսվում են իր կյանքն արդեն ավարտած ուրարտական ճարտարապետությունն ու աքեմենյանների նոր սաղմնավորվող շինարվեստը, որն իր մեջ էր առնում հին աշխարհի մշակույթի նախորդ շրջանների նվաճումները։ Դա հնարավոր դարձավ այն պայմաններում, երբ դեռևս պահպանվում էին ուրարտական շինարարական արվեստի ավանդույթները և որպես հնամենի արվեստ չէր գերազանցվել նոր ժամանակներում։

Արին-բերդում ի հայտ բերված ճարտարապետական, հնագիտական ու վիմագրական նյութերը վկայում են, որ Էրեբունիում մ. թ. ա. 782 թ. սկզբնավորված կյանքը չի ընդհատվել նույնիսկ Ուրարտուի և աքեմենյան Իրանի անկումից հետո, այլ գոյատևելով, հասել է մինչև մեր օրերը։

Էրեբունին դարձել է Երևանի հնագույն միջուկը։ Նա պահպանել է նաև դարերի ընթացքում կերպափոխված անվանումը՝ **Էրեբունի-Երեվունի-Երևան։**

1968 թ. Սովետական Հայաստանի մայրաքաղաք Երևանի 2750-ամյակի տոնակատարության օրերին, բլուրի վրա 18-ամյա համակարգված պեղումների շնորհիվ նրա հինավուրց ամրոցը գրեթե ամբողջությամբ ազատվեց բերովի հողի հաստ շերտից։ Բացվեց ամրոցի հատակագիծը, որը կազմում է վիթխարի չափերի եռանկյունի՝ եզրափակված ամրոցի հոծ պարիսպներով, որոնք միջնաբերդի հարավ-արևելյան, ավելի սյակաս զառիվեր հատվածում շարված են եռաշարք։ Միջնաբերդի շինությունների համալիրում ի հայտ եկան նաև սյունասրահը՝ վեց խարիսխներով, Խալդի աստծու տաճարը, Արգիշտի Ա-ի պալատը՝ սյունազարդ բակով, սյունազարդ դահլիճներով, տաճարով և պահեստի սենյակներով (նկ. 1)։

Միջնաբերդի հոյակերտ կառույցվածքները՝ պալատը և տաճարը զարդարված են եղել որմնանկարներով։ Սրանց ընդհանուր մակերեսը մոտավոր հաշվումներով կազմել է 2000 քմ։

Վերջին տարիներին Արին-բերդում, Կարմիր բլուրում, այժմ նաև Ալթին-թեփեում և Ազնավուր-թեփեում (Թուրքիա) կատարված պեղումները ակներև կերպով ցույց տվեցին, որ ճարտարապետական որմնանկարները Ուրարտուում կազմել են ինչպես աշխարհիկ, այնպես էլ պաշտամունքային հոյակերտ շինությունների հարդարանքի անբաժանելի մասը։

Հայտնաբերված որմնանկարները զգալի չափով փոխեցին մեր պատկերացումները ուրարտական հոյակերտ կառույցվածքների ներքին տարածությունների գեղարվեստական հարդարանքի մասին, ցույց տալով, որ որմնանկարչությունը որպես գեղարվեստական ստեղծագործության բնագավառ կանգնած է եղել բավական բարձր մակարդակի վրա։



Ցավոք, որմնանկարների վատ պահպանված լինելը դեռևս

լրիվ պատկերացում չի տալիս նրանց բովանդակության և բնույթի մասին: Չնայած պեղումների ընթացքում հայտնաբերվում են փլված ծեփածածկույթի առանձին բեկորներ՝ որմնանկարների մնացորդներով, սակայն այս պատառիկները որոշակի գաղափար են տալիս նրանց ստեղծողների վարպետության, երբեմնի հորինվածքային ձևերի հարստության մասին, որոնցում օգտագործված են բուսական և երկրաչափական զանազան մոտիվներ, մարդկանց և կենդանիների կերպարանքներ: Որմնանկարների պաշտամունքային թեմաներում կարելի է տեսնել աստվածների թափոր, սրբազան կենդանիներ, կենաց ծառ, իսկ աշխարհիկ մոտիվներում՝ որսի տեսարաններ, անասնապահության ու երկրագործության պատկերներ և այլն:

Ուրարտական որմնանկարների հորինվածքը միապլանային է՝ կազմված հաջորդական շարքերից, որոնք դասավորված են հորիզոնական շերտերով: Այդպիսի հորինվածքում կարելի է դիտել հեռանկարային կառուցվածքի ամենանախնական պատկերացումները: Այդ հորինվածքներում հեռապատկերի խորությունը որոշում է պատկերազարդ որմնանկարների հորիզոնական շերտերի խիստ համաչափ ռիթմը, որը զարգանում է դեպի վեր՝ իբրև տարածական խորություն: Երբեմն որմնազարդերն իրենց հորինվածքով կազմավորվում են որոշակի երկրաչափական ձևով, ասենք, սկավառակի վրա կամ ամփոփված շրջանակի մեջ (Կարմիր բլուր): Այդ է պատճառը որ, չնայած երբեմնի ընդարձակ հորինվածքներից մեզ են հասել հաճախ որմնանկարների միայն աննշան պատառիկներ, այնուամենայնիվ հնարավոր է լինում վերականգնել նրանց սկզբնական տեսքը, հիմք ընդունելով բաղկացուցիչ տարրերի կրկնության իրողությունը: Այս ձևով պատերի վրա իրենց նախնական տեսքով վերականգնվել են միջնաբերդի արտաքին սյունասրահի, սյունազարդ բակի, մասամբ նաև պալատի փոքր դահլիճի և Խալդի աստծու տաճարի սյունասրահի որմնանկարները:

Հաջողվել է բացահայտել նաև որմնանկարների կատարման եղանակը: Պարզվում է, որ որմնազարդերի նշագրումները շրջանակների կամ գծերի ձևով պատերի վրա նախապես կատարվել են քանոնով ու կարկինով, որից հետո գծագրված մակերեսներին կարմիր ներկով ներգծվել են նկարների ուրվագծերը, որոնք այնուհետև ծածկվել են զանազան գույներով: Որմնանկարներում նախշակաղապարի կիրառություն չի նկատվում, ըստ որում նկարները կատարված են միանգամայն անկաշկանդ, վստահ ձեռքով և նրբագեղ գծերով, որոնք վկայում են նկարիչների մեծ փորձի, հմտության և գծանկարչական վարպետության մասին: Եվ եթե այդ վարպետությունը միանգամայն համոզիչ կերպով դրսևորվում է աշխարհիկ թեմաներում (որսի տեսարան, անասնապահության ու երկրագործության պատկերներ) կամ նկարչի ստեղծագործական անհատականության մեջ, որն արտահայտվում է գծերի ու ծավալների յուրահատուկ մեկնաբանության նրբերանգներով, ապա պաշտամունքային որմնանկարներում նկարիչը դուրս չի գալիս հորինվածքների կատարման պաշտոնական և խիստ սահ-

մանափակ եղանակների շրջանակներից: Բնորոշ է, որ զարդանկարների կամ մարդկային կերպարանքների գծագրման ժամանակ ուրարտական նկարիչները հետևել են համամասնական կառուցվածքների օրինակներին, որոնք կիրառվել են նաև ճարտարապետության մեջ: Սակայն Արին-բերդի որմնանկարները տարբերվում են մյուսներից ոչ միայն իրենց գծանկարչությամբ, այլև պայծառ գույների ներդաշնակությամբ: Սովորաբար բաց հիմնաներկի վրա քսվում էին երկնագույն, կապույտ, կարմիր (տարբեր երբերանգներով), կանաչ, դեղնակարմիր և սև գույների ներկեր: Ինչպես նկատվում է, ներկապնակն այնքան էլ հարուստ չէր, սակայն պայծառ և հյութեղ գույների համադրությունը հիանալի տպավորություն էր գործում: Որմնանկարների երանգավորման հիմնական գույները կապույտն ու կարմիրն էին: Էրեբունիի որմնանկարներում, իբրև կանոն, գույների խառնում չի նկատվում: Նրանք երանգավորման տարբերությունը ստանում էին տվյալ գույնի ուժեղացման միջոցով, հավանաբար ներկի կրկնակ շերտ քսելով: Որմնանկարների մեջ հասած մնացորդները ցույց են տալիս, որ նրանք դարերի ընթացքում պահպանվել են կապույտ և սև գույնի ներկերի դիմացկունության շնորհիվ:

Որմնանկարների համար կիրառվում էին ինչպես բնական, այնպես էլ արհեստական ներկեր: Արին-բերդում հայտնաբերված անոթներից մեկում գտնվել են մեծ քանակությամբ կապույտ ներկի բրիկետներ, իսկ Թոփրակ-կալեյում ներկերը եղել են փոշու տեսքով:

Ներկեր պատրաստելու համար ուրարտացիները կիրառում էին այնպիսի եղանակներ, որոնք հայտնի էին Միջագետքում: Այսպես, սպիտակ ներկը նրանք ստանում էին գիպսից, սևը՝ ածխից, կարմիրը՝ երկաթի օքսիդից, իսկ վառ կարմիր ստանալու համար օգտագործում էին երկնագույն քարը: Ներկեր էին պատրաստում նաև պղնձից, անագից, կապարից և այլ նյութերից:

Որմնանկարը կատարվում էր սպիտակ բարակ ծեփի վրա, որով ծածկվում էր հում աղյուսով շարված պատերի հարդի խառնուրդով հաստ ծեփածածկը: Ցավոք, որմնանկարների զգալի մասը հայտնաբերվել է իրար վրա խառնիխուռն կուտակված, երբեմն մի քանի շերտերով: Դրանցից երեսով դեպի վերև ընկածները պահպանվել են իրենց նախկին տեսքով, իսկ մյուսներից փլված պատերի վրա մնացել են միայն նրանց թողած հետքերը:

Մի քանի որմնանկարներ ծածկված էին կավածեփի շերտով: Հավանաբար, դրանք վերաբերում են Էրեբունիի պատմական կյանքի երկրորդ ժամանակաշրջանին, երբ սենյակները վերանորոգելիս պատերի եղծված որմնանկարները ծածկվել են ծեփով:

Ուրարտական պետության տարբեր մասերում՝ Արին-բերդից մինչև Ալթին-թեփե և Ազնավուր-թեփե հայտնաբերված համանման որմնանկարների հորինվածքային լուծումների համեմատությունը ցույց է տալիս, որ նրանք ենթարկվել են ստեղծված ավանդների որոշակի կանոններին և ժամանակի ընթացքում այդ տարրերը օրինականացվել են: Ըստ որում, նկարների հորինվածքային թեմաները պայմանավորված են եղել ոչ այնքան պատվի-

րատուի կամքով, որքան դարերով ստեղծված կանոններով, որոնք մշակվել են փորձնական, ստեղծագործական որոնումների ընթացքում:

Որոշակի ընդհանրություն է նկատվում նաև ուրարտական և ասորեստանյան որմնանկարների միջև, հատկապես զարդանկարային թեմաների, նրանց հորինվածքային կառուցվածքի փոխառման, ինչպես նաև որոշ տարրերի մեկնաբանության մեջ: Եվ, չնայած նրան, որ ուրարտական որմնանկարները կրում են ասորեստանյան արվեստի ուժեղ ազդեցությունը, այսուհանդերձ, ուրարտական գեղանկարչությունն իր երկարատև զարգացման ընթացքում ձեռք է բերել բնորոշ երանգավորում, որն անկրկնելի յուրահատկություն է հաղորդել այդ արվեստին: Ասորեստանյան արվեստի գեղազարդման հնարանքները փոխ առնելով, ուրարտական նկարիչները զգալի չափով հարստացրել են դրանք, հին արևելքի արվեստի մեջ ներմուծելով իրենց սեփականը: Ասորեստանյան այնպիսի կենտրոնների որմնանախշերը, ինչպիսիք են Դուր-Շարուկին, Նիմրուդը, Թիլ-Բորսիպը և ուրիշներ, ընդհանուր շատ տարրեր ունեն ուրարտական որմնանկարների հետ՝ աստիճանավոր աշտարակիկներ, վարդյակներ, արմավազարդեր, ռոնենիներ, խնձորենիներ, սրբազան ծառ՝ երկու կողմերին կանգնած աստվածներով, եզրազարդերի դրվագված հորինվածքներ, ճոխ զարդարված սկավառակներ և քառանկյունիներ՝ դեպի ներս ընկած կողմերով, որոնց մոտ տեղավորված են մարդկային գլուխներով թևավոր ցուլերի (Շեդու), ծնկաչոք առյուծների կամ ցուլերի պատկերներ:

Այսպիսով, ուրարտական մոնումենտալ գեղանկարչության ձևավորման պրոցեսը տեղի էր ունենում հին Ասորեստանի արվեստի հետ ունեցած փոխադարձ սերտ կապի մեջ, որոնց համար, ամենայն հավանականությամբ, իբրև ավանդույթ է ծառայել դարերի խորքից եկող Շումերի մշակույթը, որի որմնանկարների հնագույն նմուշները հայտնաբերվել են Թել-Ուկայրի տաճարում (Ուռուկի դարաշրջան):

Ուրարտուի արվեստում որմնանկարչության հետ միասին, ըստ երևույթին նշանակալից է եղել նաև մոնումենտալ քանդակագործության դերը, որը մոնումենտալ ճարտարապետության կառուցվածքների համալիրում մարմնավորում էր արվեստների համադրման նախնական ձևերը: Այդ են ցույց տալիս նաև այնպիսի հուշարձաններ, ինչպիսին է Մուսասիրի տաճարը պատկերող ասորեստանյան նշանավոր բարձրաքանդակը, կամ վերջերս հայտնաբերված Ադիլջևազի բարձրաքանդակը և ուրիշներ:

**Միջնաբերդի արտաքին սյունասրահի որմնանկարը:** 1968 թ. բացվեցին պատերի կավածեփի բեկորները՝ որմնանկարների մնացորդներով, որոնք պատկանում էին կիսավեր սյունասրահին, որը տեղավորված է միջնաբերդի հարավային մասում, նրա արտաքին պարիսպների կառուցապատման մեջ (տախտակ 1, 2): Սյունասրահը ճակատի վրա վեց սյուն ունեցող բաց սյունաշարք է՝ ամբողջ երկարությամբ լայնորեն տարածվող աստիճաններով:

Ուրարտական նկարիչների ուշադրությունից չի վրիպել գունազեղ որմնանկարներով զարդարված սյունասրահի ընկալման հնարավորությունը, ինչպես մերձակա, այնպես էլ հեռավոր տեսադաշտերից, որտեղից սկսվում են շրջակա տարածության վրա բարձրացող միջնաբերդի մատույցները:

Սյունասրահի պատերը, դատելով նրա կավածեփի առանձին բեկորներից, ծածկված են եղել որմնանկարներով, որոնց հորինվածքային կառուցվածքը կազմում էին բազմաթիվ աստղերը և շրջանները: Այդ աստղերից խոշորները տեղավորված էին մեկը մյուսի կողքին ուղղահայաց և հորիզոնական շարքերով, որոնց արանքներում կապույտ հիմնապաստառի վրա շախմատային կարգով դասավորված էին համանման, բայց ավելի փոքր չափերի աստղիկներ: Այս որմնանախշից վերև, պատի վերնամասում (առաստաղի տակ) ամբողջ երկարությամբ ձգվելիս է եղել գունազեղ եզրազարդը, որի վերակազմությունը ի հայտ բերեց նրա վեց առանձին զարդարուն շերտերը:

Առաջին կամ վերին շերտը ծածկված է եղել վարդյակներով, երկրորդը, կամ ներքինը՝ արմավիկներով, երրորդը՝ արմավիկների և կոկոնների զուգորդմամբ: Այնուհետև գալիս է աստիճանավոր աշտարակիկներ հիշեցնող նկարների գեղազարդված շարքը, իսկ սրա տակ՝ սրբազան ծառերի նկարներ՝ նրանց մոտ կանգնած աստվածներով: Եզրազարդը ներքևից վերջավորվում էր ռնգախնձորի պտուղների դրասանգով (ներքևից եռատերև ունեցող շրջաններ): Ամբողջ եզրազարդը նկարված էր կարմիր և կապույտ ներկերով՝ բաց գույնի հիմնապաստառի վրա[1]:

**Արգիշտի Ա-ի պալատի որմնանկարները:** Էրեբունիի պալատի հիմնական մասն են կազմում սյունազարդ բակը՝ նրա արևմտյան կողմում տեղավորված Սուսի տաճարով և հոյակապ դահլիճներով: Սյունազարդ բակը, որի պատերը, ծեփածածկույթի փլված բեկորներից դատելով, ներկված են եղել կարմիր գույնով, իսկ Սուսի տաճարը՝ կապույտ գույնի պատերով, որոնք այս հատվածում ստեղծում էին հակադիր գույների ներդաշնակ միացություն (աղյուսակ 3): Ինչպես ցույց են տալիս որմնանկարների պահպանված մնացորդները, պալատի կենտրոնական հատվածի բոլոր պատերն իրենց հորինվածքային կառուցվածքով ունեցել են միասնական եզրազարդ՝ կազմված մի քանի շերտերից, որոնք ծածկված են եղել նախասրահի եզրանախշից մեզ հայտնի տարրերով՝ վերևից ներքև դասավորված վարդյակներ, արմավենիկներ, աստիճանավոր աշտարակիկներ, սրբազան ծառեր՝ նրանց մոտ կանգնած աստվածներով և պտուղների դրասանգ:

---

[1] Առասպելական կենդանիների այժմյան գեղազարդային արձանները, որոնք դրված են պատշգամբի ելուստների վրա և երկու կողմերից եզրափակում են սանդուղքները, տեղադրվել են նախասրահը վերականգնելու ժամանակ՝ 1968 թվականին: Արձանները պատրաստվել են ուրարտական այն արձանիկների օրինակով, որոնցով զարդարված է եղել ուրարտական թագավորների գահը՝ հայտնաբերված Թոփրակ-կալեում և Վանում: Մարդկային իրանով թևավոր առյուծի արձանի նախօրինակը դրվագազարդ աչքերով քարե գլուխ է ունեցել, իսկ ամբողջ արձանը ծածկված է եղել բարակ ոսկե թերթով:

Ուշագրավ են սրբազան ծառերի և աստվածությունների պատկերները, որոնք այդ եզրազարդերում կատարված են մեծ խնամքով և գեղարվեստական բարձր որակով: Այսպես, պատկերների պահպանված վերնամասերում պարզ երևում է, որ նրանց հանդերձանքը միագույն չի եղել, այլ հիմնական գույնից բացի ունեցել է նաև լրացուցիչ նրբագծեր:

Այս եղանակով նկարիչը ավելի նրբագեղ էր դարձնում մարդկային մարմինների ծավալները՝ լրացուցիչ գուներանգ հաղորդելով նրանց: Այդ որմնանկարներում (7,5 սմ) առկա է նաև խույրը, ընդ որում կատարի ելունդով (ծայրակոն) և զարդանկարով, որտեղ պատկերված են վերևի մասում՝ կախ ընկած կիսաշրջաններ, իսկ ներքևում՝ աստվածությունը խորհրդանշող եղջյուրներ:

Որոշ տարբերություն է նկատվում պալատում հայտնաբերված սրբազան ծառերի նկարների և նրանց նմանակների միջև, որոնք գտնվել են միջնաբերդի մնացած հատվածներում: Պալատական որմնանկարներում սրբազան ծառերը ավելի սլացիկ են պատկերված:

Ամենայն հավանականությամբ, Սուսի տաճարը եզրազարդից բացի ունեցել է նաև այլ որմնանկարներ, որոնց թվին կարող է պատկանել տաճարի ճակատի առջև հայտնաբերված խոշոր արմավենիկի բեկորը:

**Պալատի փոքր դահլիճի որմնանկարները:** Պալատի փոքր դահլիճը (8,0 × 17 մ) տեղավորված է պալատական համալիրի կենտրոնական մասում, սյունազարդ բակից արևելք, որի հետ հաջորդակցված է նախադահլիճի երկու սենյակներով: Դահլիճի արևելյան պատն ունի երկու որմնախորշեր, որոնց կավածեփի վրա պահպանվել են որմնանկարների կիսաեղծ, հազիվ նշմարելի հետքեր: Սրանք միակն են իրենց սկզբնական տեղերում մնացած նկարներից:

1961 թ. պեղումների ժամանակ արևմտյան պատի մոտ, հատակի վրա գտնվեց պատերի ներքնամասի որմնանկարների լավ պահպանված մի խոշոր բեկոր (1,28 × 1,53 մ): Այստեղ պատկերված է մի ոտքով ծնկաչոք ցուլ՝ ներս ընկած կողմերով խոշոր քառակուսու առջև, որի մեջ ներգծված է վարդյակով և այլ տարրերով զարդարված շրջան:

Պատի ներքնամասի որմնանկարը սկսվում է 0,42 մ բարձրությունից և ներկայացնում 1,28 մ լայնությամբ մի շերտ՝ հորիզոնական մասնատումներով: Վերևի մասում նկարված է արմավենիկների շարք, շատ սովորական Էրեբունիի որմնանկարների համար, ներքևում՝ աստիճանաձև աշտարակիկների շարք, իսկ նրանց տակ՝ սրբազան ծառերի և նրանց կողքերին կանգնած աստվածների շարք: Դրանցից ներքև ընկած է որմնանկարների ավելի լայն շերտը՝ ծնկաչոք ցուլերի պատկերներով, որոնք տեղավորված են ներս ընկած կողմերով խոշոր քառակուսիների մոտ, իսկ այս հորինվածքի շարունակության մեջ ծնկաչոք ցուլերին փոխարինում են առյուծները: Այս լայն շերտից ներքև նորից ենք տեսնում սրբազան ծառեր, իսկ սրանց տակ ձգվում է զար-

դանկարների ժապավենը, որը կազմված է կախված պտուղների դրասանգից (ներքևից եռատերևով զարդարված սկավառակներ, որոնք հիշեցնում են նռնախնձորի ձևը):

Տվյալ որմնանկարի առանձին լայն շերտեր անջատված են ավելի նեղ շերտերով՝ նրանց վրա տեղավորված վարդյակներով, որոնք համընկնում են ասորեստանյան հանրահայտ զարդանկարներին, օրինակ, լավ հայտնի են Սալմանասար Գ-ի Բալավատյան դարբասների նկարները:

Այսպիսով, բացի եզրազարդի որմնանկարներից, որը համանման է նախորդ սենյակների եզրանախշերին, փոքր դահլիճում ի հայտ է գալիս որմնանկարի հորինվածքային նոր կառուցվածք: Մինչդեռ, ինչպես ցույց են տալիս հայտնաբերված առանձնակի, նշված հորինվածքին չհարմարվող բեկորները (խոշոր աչքը, ձեռքը կամ թևերի մասը), դահլիճը թեմատիկ առումով ձևավորված է եղել ավելի ճոխ:

Միաժամանակ կարելի է նշել, որ դահլիճի հարավային պատը երկու մետր բարձրությամբ իր քարե շարվածքի մեջ ունի երեք փոսիկներ, հավանաբար բրոնզե գամերի՝ զիգաստիների համար, որոնցով պատի վրա ամրացվում էին գորգեր և գործվածքներ՝ սենյակի ներքնամասի լրացուցիչ ձևավորման նպատակով:

Դահլիճի հարդարանքի ճոխությանը, որի պատերի հարթությունները համարյա լրիվ ծածկված էին որմնանկարներով, համապատասխանել են երկու նախադահլիճային սենյակների ներքնամասերը: Սակայն, ցավոք, նրանց որմնանկարները անհամեմատ վատ են պահպանվել:

**Մեծ դահլիճի որմնանկարները:** Պալատի արևմտյան մասում տեղավորված մեծ դահլիճը (12,5 × 49,0 մ) հետագայում կցված կառույց էր (պալատի երկրորդ շինարարական ժամանակաշրջան): Սակայն, նոր կառուցապատման մեջ լինելով, դահլիճը իր երկու նախադահլիճային սենյակներով մեկուսացվել է մնացած կից կառուցվածքներից և նրա մուտքերը բացվել են միջնաբերդի հրապարակից, Խալդի աստծո տաճարի հակադիր կողմերից:

Քանի որ դահլիճը խիտ կառուցապատված էր ամբողջ եզրագծով, հավանաբար լուսավորվում էր վերևից, լուսամուտների միջոցով, որոնք բացված էին կից կառուցված սենյակների ծածկից վերև:

Իր երկայնական առանցքով դահլիճն ունեցել է հինգ փայտե սյուներ, որոնցից տեղում պահպանվել են միայն կարծր տուֆից չորս խարիսխները՝ յուրաքանչյուրը միատող սեպագիր արձանագրությամբ. «Արգիշտին՝ Մենուայի որդին այս տունը կառուցեց»: Մեծ դահլիճի պատերը, հավանաբար, նկարազարդված են եղել 4,5 մ բարձրությամբ և այդ տեսքով էլ պետք է ներկայացնեին ուրարտական գեղանկարչության նշանավոր ստեղծագործությունը: Սակայն իր գոյության վերջին շրջանում դահլիճը ծառայել է իբրև գինու մառան: Նրա հողե հատակի մեջ թաղվել են վիթխարի կարասներ, որոնք հայտնաբերվեցին պեղումների ըն-



Նկ. 2 Рис. 2 Fig. 2

թացքում: Երբեմնի ճոխ որմնանկարներից պատահականության բերումով պահպանվել են միայն դրանց մի քանի հոյակապ բեկորները: Համանաբար, աքեմենյան ժամանակաշրջանում մեզ անհայտ նպատակներով դահլիճի հյուսիս-արևմտյան մասում գտնվող պատերի կավածեփի բեկորները այդ որմնանկարների մնացորդներով հավաքվել են, տեղադրվել և հարթվել հատակից մոտ 40 սմ բարձրության վրա՝ ծածկված մեծ կարասների խեցեբեկորների շերտով: Հենց այդ տեսքով էլ սքանչելի որմնանկարները (կավե հատակի հաստ շերտով) պահպանվել են մինչև մեր օրերը: Նրանք պաշտամունքային և աշխարհիկ բովանդակություն ունեն, ըստ որում, աշխարհիկը թեև ուրարտական արվեստում ի հայտ է գալիս առաջին անգամ, սակայն դատելով պահպանված մնացորդներից, ունեցել է իր բազմադարյան հարուստ ավանդույթները:

Կավե հատակի հաստության մեջ հայտնաբերված որմնանկարների բեկորների վերակազմության ընթացքում կարելի է պարզել հորինվածքային մի շարք կառուցվածքների թեմատիկան, որը, ինչպես հաջողվել է որոշել, բազմաթիվ զուգադրություններ է ի հայտ բերում Հին Արևելքի, մասնավորապես Ասորեստանի, Եգիպտոսի և այլ արվեստների հետ:

Մեծ դահլիճի որմնանկարների ներքևի մասը կրկնում է փոքր դահլիճի համապատասխան հորինվածքը: Այստեղ ևս առկա է լայն շերտը, այն տարբերությամբ միայն, որ ներս ընկած կողմերով և ներգծված սկավառակներով քառակուսիների առջև տեղավորված են ոչ միայն մեկ ոտքով ծնկաչոք ցուլեր և կանգնած առյուծներ, այլև թևավոր առյուծների և մարդկային իրաններով ցուլերի կերպարանք ունեցող առասպելական էակներ, որոնք շատ սովորական են ասորեստանյան արվեստում (տախտակ 23): Այս լայն շերտը երիզված է եղել ճիշտ այնպես, ինչպես փոքր դահլիճի որմնանկարում: Վերևի մասում պատկերված են արմավենիկներ, աստիճանաձև աշտարակիկներ՝ սրբազան ծառեր ասավածներով, իսկ ներքևում՝ դարձյալ սրբազան ծառեր և պտուղների դրասանգներ:

Այս որմնանկարների շարունակության վրա, դահլիճի խորության մեջ ներս ընկած քառակուսիների առջև ծնկաչոք ցուլերի և առյուծների փոխարեն կանգնած են մարդկային կերպարանքներ՝ դեմքով դեպի դիտողը, որոնք առաջին անգամ են հանդիպում տվյալ հորինվածքում: Հարկ է նշել, որ սրբազան ծառերի կողքին պատկերված ցուլերի մոտ, որոնց մենք տեսնում ենք Թեյշեբայինում հայտնաբերված, բայց էրեբունիական ծագում ունեցող բրոնզե սաղավարտների վրա, տեղավորված են երկու աստվածություններ՝ թևավոր, մորուքներով (քերուբի) և անթև, անմորուք:

Էրեբունիի որմնանկարներում սրբազան ծառի մոտ պատկերված են միայն ցուլեր: Աստվածության ի հայտ եկած խոշոր կերպարանքով հաջողվել է պարզել, որ ինչպես գեղանկարչության, այնպես էլ ճարտարապետության մեջ ուրարտական նկարիչները կիրառել են համամասնականության սկզբունքը, որը,




Նկ. 3. Рис. 3. Fig. 3.

հավանաբար, արվեստի այդ բնագավառներում տիրապետող օրինաչափություն էր:

Այսպես, նկարից (3) ակներև է, որ խույրի լայնությունը ծառայել է իբրև գործակից ամբողջ կերպարանքի բարձրության (1 × 7), ձեռքերի դիրքի բարձրության (1 × 4) և հանդերձանքի ծոպերի մակարդակի համար (1 × 1):

Աստվածության այս խոշոր կերպարի առջև տեղավորված են աստվածների և ծառերի չորս շարք պատկերներ, այս դեպքում սովորական չափերի, որոնք համապատասխանում են լայն շերտը ներքևից և վերևից եզրապատող նկարներին (տախտակ 26):

Հենց այստեղ, դռնախորշի առաջ գտնվել են աստվածների թափորը պատկերող որմնանկարի բեկորներ, որոնցից համեմատաբար լավ են պահպանվել երկու կերպարանքների իրանների վերևի մասերը, իսկ մյուսները մեզ են հասել խիստ վնասված

տեսքով (տախտակ 15): Աստվածները պատկերված են խույրերով և անմորուք, զարդարված են եղջյուրներով և ժապավեններով, որոնք իջնում են նրանց մեջքերին: Լավ պահպանված աստվածներից առաջինը աջ ձեռքում մի փոքրիկ դույլ է բռնել, իսկ ձախում՝ սրբազան ծառի ճյուղ: Երկրորդը, ընդհակառակն, աջ ձեռքում բռնել է ճյուղը, ձախում՝ դույլը: Կերպարանքները կատարված են պայմանական ոճով, աստվածների դեմքերը միատեսակ են, կեցվածքները կաշկանդված, ճյուղերը բռնած ձեռքերի բաց ափերով:

Սովորաբար աշխարհիկ բովանդակության որմնանկարներում ձող բռնած այսպիսի կերպարանքները պատկերվում են մի ձեռքը վեր բարձրացրած և փակ ափերով: Իսկ այստեղ, նկարիչը այս նախշակաղապարային կերպարանքը օժտելով սրբազան ծառի ճյուղով և վերջինս տեղավորելով ձեռքի բաց ափի մեջ, ոչ մի չափով չի փոխել մասերի դրությունը:

Այս հորինվածքից ներքև, դռան բացվածքից դեպի աջ, պատկերված է զոհի ցուլերի բերման տեսարանը, որը, հավանաբար, իր թեմատիկայով առնչվում է աստվածների թափորի տեսարանի հետ (տախտակ 17): Կենդանիները նկարված են ցայտուն ուրվագծերով, իրանի մակերեսի դրվագազարդ հարդարումով, որ մեզ քաջ հայտնի է ուրարտական բրոնզե վահանների վրայի ցուլերի պատկերներից կամ Թոփրակ-կալեի քարե եզրազարդից: Ցուլերին վարում է մի մարդ, որից պահպանվել է միայն իրանի ներքևի մասը, նույնպես շատ ցայտուն ուրվագծերով: Ուշագրավ է, որ մարդը չի քշում կենդանիներին՝ մտրակը ձեռքին գնալով նրանց ետևից, ինչպես սովորական է համանման աշխարհիկ տեսարաններում, այլ քայլում է նրանց առջևից, կարծես թե նրանց տանելով իր ետևից:

Նույն դահլիճում գտնվել են որմնանկարների մի շարք բեկորներ, որոնց թվում տեսնում ենք աշտարակիկներ, որոնցից տարբեր վիճակով պահպանվել են երեք տեսարաններ (տախտակ 18): Ամենայն հավանականությամբ իրենց բնույթով նրանք ևս առնչվում են նախորդ տեսարանների հետ: Դրանց համադրությունից ակնհայտ է դարձել, որ աշտարակիկները կանգնած են եղել մի շարքում, իրանից որոշակի հեռավորության վրա, այսինքն ունեցել են խիստ համաչափ դասավորություն, իսկ շրջանակներով ուրվագծված միջանկյալ տարածությունները նույնպես եղել են ճոխ նկարազարդված: Այդ աշտարակիկները իրենց համանման օրինակները ունեն Թոփրակ-կալեի բրոնզե թիթեղիկների վրա պատկերված շենքի, ինչպես նաև ոսկորի վրա փորագրված այն աշտարակիկի հետ, որի բեկորը հայտնաբերվել է Թեյշեբայինիի պեղումների ժամանակ:

Այս աշտարակները որոշակի նմանություն ունեն նաև Ադիլջևազում, Կավկալիսի պեղումներով հայտնաբերված բազալտե խորանաձև մեծ կառույցի ձևերի հետ, որոնց հնագետները համարում են զոհաբերության սեղան: Հենց այս պատճառով էլ կարելի է ենթադրել, որ Էրեբունիի աշտարակիկները նույնպես եղել են պաշտամունքային նպատակների ծառայող շինություններ:

Միայն այս դեպքում հասկանալի կլինի այն թեմատիկ փոխադարձ կապը, որ գոյություն ունի վերը քննված տեսարանների միջև, որոնք պատկերում են սրբազան կենդանիների հետ աստվածների շքերթը դեպի տաճար, որտեղ տեղի են ունենում զոհաբերությունները:

Պատի վերևում, որմնանկարները եզրափակող մասում տեղավորված է եզրազարդ, որը բաղկացած է սրբազան մեծ ծառերի իրար հաջորդող երկու պատկերներից: Նրանցից մեկը ամփոփված է կիսակլոր վերնամասով ուրվագծի մեջ: Սրբազան ծառի այսօրինակ պատկերումը հանդիպում է նաև Արգիշտի Ա-ի և Սարդուրի Բ-ի սաղավարտների ճակատամասերի հորինվածքներում: Երկրորդ պատկերը արտահայտում է առանձնակի կանգնած ոճավորված սրբազան ծառը՝ վեր ձգվող ճյուղերով, որոնք զարդարված են կապույտ և կարմիր գույներով:

Այս եզրազարդի և խոշոր գեղազարդային տարրերով շերտի միջև գտնվելիս է եղել մի խոշոր հորինվածք, որի մասին կարելի է պատկերացում կազմել նրա առանձին պատառիկներից: Այստեղ պատկերվել են թագավորական որսի, երկրագործության և անասնապահության տեսարաններ:

Որմնանկարի բեկորների մեջ ուշագրավ է որսի տեսարանը՝ շատ հետաքրքիր մանրամասերով:

Հավանաբար, այս հորինվածքի գլխավոր տարրը եղել է մարտակառքը, մարդու կերպարանքի հետ, որից պահպանվել են միայն թափքը և անիվը՝ ճաղերով: Մարտակառքում կանգնած մարդու կերպարանքից պահպանվել է միայն ներքևի մասը, որը ցույց է տալիս տոհմիկ անձնավորությանը համապատասխան ճոխ հանդերձանքը (տախտակ 29):

Մեկ այլ բեկորի վրա պահպանվել են սլացող նժույգի առջևի ոտները և կրծքի մի մասը: Չափերից դատելով պետք է ենթադրել, որ սա նույնպես պատկանել է մարտակառքով հորինվածքին:

Որսի ընդհանուր տեսարանում ցույց է տրված մի մարդու ոչ մեծ կերպարանք, հավանաբար հետիոտն որսորդի, որից նույնպես անվնաս է մնացել միայն ներքևի մասը: Այս կերպարանքի համեմատությունը մարտակառքում պատկերվածի հետ ցույց է տալիս, որ ազնվատոհմիկ իշխանավորի կամ թագավորի պատկերը բավականին մեծ է, գրեթե չորս անգամ գերազանցում է որսորդին, մի բան, որ համապատասխանում է Հին Արևելքի արվեստի սկզբունքներին:

Որսի տեսարանը պատկերված է բնության հիմնապատառի վրա: Որմնանկարում բնությունը հանդես է գալիս առանձին ծառերի, թփերի, ճահճի և այլ տեսարաններով:

Ուրարտական թագավորի որսի կենդանիները ևս բազմազան են: Շատ լավ ճանաչվում է ընձառյուծի կերպարանքն իր սրընթաց վազքում, որն ավելի է շեշտվում նրա վեր ցցված պոչով: Ընձառյուծի այս նկարը կենդանիներ պատկերող ուրարտական արվեստի ստեղծագործությունների շարքում աչքի է ընկնում իր հորինվածքային ուշագրավ կառուցվածքով, հատկապես կենդա-

նու կերպարանքի խիստ ցայտուն հարաշարժությամբ: Նրանից վերև տեղավորված շերտի վրա երևում է իրանով առաջ թեքված վայրի ցուլի գլուխը: Հավանաբար որսորդի նետով խոցված այս կենդանին պատկերված է ընկնելու պահին:

Որսի տեսարանում հատկապես հետաքրքիր է հորթուկի պատկերը, որը թաքնվել է եղեգնուտներում: Հորթուկը փախել է որսորդներից, բայց դեռ ուշքի չի եկել սարսափից և ետևի ձախ ոտքով քորում է ականջի ետևը, կամ փորձում է դուրս քաշել այնտեղ խրված նետը: Հորթուկի պատկերը զգալի չափով կենդանացնում է որսի տեսարանի ողջ հորինվածքը: Կենդանին տեղավորված է որմնանկարի կապույտ հիմնապաստառի վրա, եղեգնուտներն արտահայտված են գեղանկարչական գծերով:

Ընձառյուծի պատկերի հետ միասին այս երկու կենդանիների կերպարանքներն իրենց ցայտուն դրսևորված հարաշարժությամբ միանգամայն փոխում են մեր պատկերացումները ուրարտական արվեստում ռեալիստական մեկնաբանության մասին: Նկատի ունենալով հորթուկի պատկերը, կարելի է համոզվել, որ նկարիչը ցույց է տվել ոչ միայն կենդանու կերպարանքի՝ ուրարտական արվեստի համար միանգամայն նոր հորինվածքային կառուցվածքը, այլև նրա մկանունքների ուրվագծման բավականին համոզիչ ճշգրտությունը (տախտակ 33):

Աշխարհիկ բովանդակությունը ուրարտական նկարչի համար լայն հնարավորություն էր ստեղծում բացահայտելու իր ստեղծագործական անհատականությունը: Դրա շնորհիվ, պաշտամունքային որմնանկարների կաշկանդված ձևերին հակառակ, հանդես են գալիս արտահայտիչ գծերով օժտված գեղանկարչական հորինվածքներ:

Ցավոք, որմնանկարի բեկորների մնացորդները հնարավորություն չեն տալիս լիակատար կերպով վերականգնելու որսի տեսարանը, սակայն հորինվածքի ընդհանուր բնույթը պարզորոշ է և արտահայտված է մեր սխեմատիկ ուրվագծում (նկ. 4):

Որմնանկարի մնացորդների մեջ կան այնպիսի բեկորներ, որոնք պատկերում են որսից հետո տեղի ունեցած իրադարձությունները: Այսպես, նրանցից մեկի վրա պատկերված է խիստ ուշագրավ հագուստով, բուշլակի նման գլխարկով որսորդ, որը բռնել է երկու շների և կերակրում է նրանց: Մեկ այլ բեկորի վրա պատկերված է դաշտում խայտացող նժույգի հիանալի պատկերը, որի վրայից իջեցվել է թամբը կամ մարտակառքի լծասարքը: Վարգող նժույգը արտահայտված է արտակարգ մեղմությամբ և նրբագեղությամբ:

Սև նժույգը պատկերված է սրընթաց շարժման մեջ, կապույտ հիմնապաստառի վրա և ուժեղ տպավորություն է գործում: Ուրարտական արվեստում որոշակի կանոններով կաշկանդված նկարիչը, որ հաճախ նկարում է ըստ նմուշօրինակների, այս դեպքում նժույգի կերպարանքը պատկերել է այնպես, որ նրա վազքի թեթևությանը զարմանալի նրբագեղություն է հաղորդվել:

Հարկ է նշել, որ ձին մեծ տեղ էր գրավում ուրարտական արվեստի թեմատիկայում: Նրան կարելի է տեսնել Ալթին-թեփեում

գտնված բրոնզե արձանիկում, և Կարմիր բլուրի պեղումներով հայտնաբերված բրոնզե սաղավարտների, կապարճների և գոտիների բարձրաքանդակներում։ Իր նրբագեղությամբ առանձնապես աչքի է ընկնում ձիու գլխի քանդակը, որը խիստ ուշագրավ է իր կազմախոսական ճշգրտությամբ, արտահայտչականությամբ և կատարման բարձր վարպետությամբ։

Ինչ վերաբերվում է որսորդությանը, որը որմնանկարների հիմնական բովանդակությունն է, կարելի է ասել, որ այդ թեման այդքան էլ խորթ չի եղել ուրարտական արվեստին։ Համանման նմուշներից կարելի է նշել Էրեբունիի քաղաքային տարածքի հյուսիս-արևմտյան ծայրամասում գտնված երեք գոտիների վրայի բարձրաքանդակների հորինվածքները։ Այդ բարձրաքանդակների վրա որսը պատկերված է մարտակառքերով, ինչպես նաև հետիոտն և հեծյալ որսորդներով, որոնք որսում են ոչ միայն ցուլեր, այլև առյուծներ։

Հարկ է նշել նրանց հորինվածքային պարզությունը՝ համեմատած այն նկարների հետ, որոնք պահպանվել են Արգիշտի Ա-ի պալատում, հատկապես որսի տեսարանում։

Որսի տեսարանի հետ միասին հետաքրքրություն են ներկայացնում նաև անասնապահության տեսարանները, որոնց պատառիկները հայտնաբերվել են առանձին, տարբեր տարիների ընթացքում և այդ պատճառով հնարավոր չի ամբողջացնել մեկ հորինվածքում։ Այսուհանդերձ, կարելի է եզրակացնել, որ այդ հորինվածքներից մեկում պատկերված է եղել մանր եղջերավոր անասունների հոտը։ Ըստ որում այս տեսարանը բավական հետաքրքիր կառուցվածք է ունեցել, ներկայացնելով երկու առանձնակի շարքերով շարժվող անասունների շարանը։ Այս եղանակով նկարիչը ցույց է տալիս հոտի մեծությունը, որը տարածվել է լայնությամբ։ Միաժամանակ, ամեն մի շարքում կենդանիները այնպես են տեղավորված իրար կողքի, որ նրանցից յուրաքանչյուրը մասամբ ծածկում է մյուսին։ Երկու շարքերում հերթագայվող կենդանիների կերպարանքները առանձնանում են սև ներկով, որով և խուսափելով իրար վրա դրված նկարների միախառնումից, միաժամանակ հասնում են ոչ միայն գունային, այլև հորինվածքային որոշակի ներգործության։ Այստեղ, ինչպես և նախորդ դեպքերում դրսևորվում է նկարչի ուշադրությունը կերպարանքների մանրամասների վրա, չնայած դրանց ոչ մեծ բացարձակ չափերին։ Այսպես, ցայտուն կերպով ցույց է տրված խոյի բուրդը՝ մանր գանգուրների ձևով, որը շատ նման է բնականին։

Անասունների հոտի սկիզբը (հորինվածքի ձախակողմյան մասը) հետաքրքրություն է ներկայացնում ինչպես իր պահպանված վիճակով, այնպես էլ պատկերման ձևով (տախտակ 38)։ Որմնանկարի այս հատվածում հոտը քշող հովիվը պատկերվել է գրեթե ամբողջ հասակով, եթե չհաշվենք ոտքերը՝ ծնկներից ներքև։ Հովիվը երկար ու գունագեղ հագուստով է, հավանաբար այծենակածը վրան գցած։ Խիստ յուրօրինակ է հովվի փափուկ եզրավոր գլխարկը՝ ետևից կախված երկու ճարմանդաձև վերջավորվող ժապավեններով։

Հովիվը հոտը քշում է մտրակով, որը բռնած է գլխից վերև: Խիստ բնորոշ է, որ նա մտրակը բռնել է ինչպես կարգն է՝ ամուր սեղմած բռունցքում: Այստեղ հետք անգամ չկա այն պայմանականության, որ դիտվում էր աստվածների շքերթի տեսարանում, ուր աստվածները արմավենու ճյուղերը բռնել էին բաց ափերով:

Հովվից առաջ և հոտից անմիջապես հետո պատկերված է բրդոտ սև մեծ շունը, որը քայլում է բացված երախով: Մյուս շունը՝ կեռ պոչով և գլուխը ետ, դեպի հոտը թեքած, շարժվում է հոտի առջևից: Մինչդեռ, հավանաբար, չբավարարվելով կերպարի նույնիսկ այդպիսի արտահայտիչ ու բնորոշ մանրամասով, նկարիչը, ստեղծելով զուտ կենցաղային տեսարան՝ զուրկ հանդիսավորության պաշտոնական գծերից, հորինվածքի մեջ ներմուծել է նոր տարր, որով կարծես տառացիորեն վերարտադրում է իր տեսածը (տախտակ 39):

Այդ կարգի հավելումներից է նաև նորածին գառնուկը, որին հովիվը տանում է իր ձեռքի վրա: Այս հորինվածքում նկարչի դիտողականությունը ընդգրկում է ուրարտական անասնապահների առօրյա, իրական կյանքի մանրամասներ: Սակայն, անհրաժեշտ է նշել, որ դահլիճի որմնանկարներում անասնապահական թեման իր հորինվածքով տարբեր արտահայտություններ է ստացել: Օրինակ, նրա բեկորներից մեկը պատկերում է արոտավայրում արածող կովին, որի միայն առաջամասն է պահպանվել (տախտակ 38):

Էրեբունիի որմնանկարչության աշխարհիկ մյուս թեմատիկան երկրագործությունն է, որն արտացոլված է հողի մշակման տեսարաններում: Ցավոք, այդ տեսարաններից միայն աննշան բեկորներ են պահպանվել, որոնց հիման վրա կարելի է դատել ոչ թե բուն տեսարանների, այլ լոկ նրանց թեմաների մասին: Այսպես, բեկորներից մեկի վրա պահպանվել են միայն եզների գլուխներ, լուծ և մտրակով եզներին քշող մարդու կերպարանքի վերևի մասը: Երկրագործը պատկերված է գլխաբաց և գանգուր մազերով: Նրա հագին վերնաշապիկ է, քշտած թևերով: Համանման մի այլ պատառիկի վրա ներկայացված են ավելի լավ պահպանված եզներ, իսկ մարդու պատկերի ուրվագիծը համարյա եղծված է: Հավանաբար, հիշյալ և համանման բեկորները կարող են ներկայացնել երկրագործության ընդարձակ տեսարան՝ կազմելով լայնորեն տարածված հորինվածք (տախտակ 37):

Միանգամայն բնական է, որ հողագործական բովանդակությամբ որմնանկարները տեղավորված են եղել որսի և անասնապահության տեսարանների կողքին, քանի որ հնում նույնպես այդ տեսարանները դիտվել են իբրև սննդի հայթայթում:

Ուշագրավ է նաև, որ մեծ դահլիճի որմնանկարներում որսի, անասնապահության, երկրագործության տեսարաններում վերարտադրված է նաև բնությունը: Այստեղ տեսնում ենք անտառն իր բնական տեսքով, առանձին ծառերը, նույնիսկ նրանց ճյուղերին նստած թռչունները (տախտակ 32):

Գյուղական կյանքի և որսորդության տեսարաններ պատկերող ուրարտական որմնանկարչությունը նշանակալի հետաքրք-

քրությունն է ներկայացնում իր գեղարվեստականությամբ և ճանաչողական կարևոր նշանակություն ունի ուրարտացիների կենցաղի ուսումնասիրության համար:

Ցավոք, նույնը չի կարելի ասել ռազմական բովանդակությամբ որմնանկարների մասին, որոնք մեզ են հասել միայն կիսաեղծ հետքերի ձևով: Այդ բեկորներից մեկի վրա պահպանվել է երեք մարդու կերպարանք, հավանաբար մի հատված ընդարձակ հորինվածքից, որտեղ պատկերված են եղել շարքում քայլող զինվորներ: Այդ զինվորների կերպարանքների մեզ հասած առանձին մանրամասերը որոշ ընդհանուր պատկերացում են տալիս նրանց հագուստի, գլխարկների, կոշիկների և զենքերի մասին: Այսպես, զինվորների հագուստը կարճ է եղել, մինչև ծնկները, գլխարկները՝ լայնեզր, դեպի վեր ոլորված եզրերով, կոշիկները՝ մինչև ծնկները հասնող քուղերով և կրունկներով: Զինվորների ունեցվածքը ամրացված է նրանց մեջքերին (տախտակ 49):

Դատելով բրոնզե առարկաների բազմաթիվ բարձրաքանդակներից, այստեղ ներկայացված հետևազորը պետք է գտնվեր նույն շարքում՝ հեծելազորի և մարտակառքերի հետ միասին: Հավանաբար, այս վերջիններին են պատկանում այն բեկորները, որոնք առայժմ հնարավոր չէ հավաքել որևէ միասնական հորինվածքի մեջ:

Շատ հետաքրքիր է ձիու գլխի փոքր պատառիկը, որից երևում է, որ այստեղ պատկերված են արագավազ ձիերը: Այդ է ցույց տալիս ձիու առջևից ձգվող կաշե փոկերի համասարքը:

Բ. Պիոտրովսկին, ուսումնասիրելով ասորեստանյան պալատների բարձրաքանդակները, պարզել է, որ նրանց ընդհանուր հորինվածքը կազմված է առանձին կերպարներից, որոնք կատարվել են նկարչի արվեստանոցում գտնվող նախատիպերի հիման վրա: Այդպիսի նախատիպեր և զանազան գծագիր ուրվանկարներ մեծ քանակությամբ հասել են մինչև մեր օրերը, որոնք պահպանվել են հատկապես հին Եգիպտոսի նկարիչների արվեստանոցներում:

Բ. Պիոտրովսկին եզրակացնում է, որ հիշյալ նախատիպերի հիման վրա կատարվել է տարբեր շարժումների մեջ կամ տարբեր դիրքերում գտնվող առանձին կերպարանքների համակցություն: Այսպես, արագ սլացող մարտակառքի վրա հարձակվում է առյուծը, սակայն նրա կերպարանքը արտահայտում է հանգիստ վիճակ, իսկ նետ արձակող թագավորը կառքի մեջ այնպիսի դիրքով է պատկերված, որի ժամանակ նետը կարող էր շեղվել պահանջվող ուղղությունից:

Այսպիսով, խախտվում էր կերպարանքների և նրանց գործողությունների հորինվածքային և գործառնական փոխադարձ կապը: Սակայն, չնայած դրան, նկարչի վարպետությունը տարբեր բարձրաքանդակների բոլոր հորինվածքներին հաղորդում է որոշակի ներքագեղություն, գեղարվեստական ամբողջականություն և համոզչություն, որի շնորհիվ ասորեստանյան արվեստը համարվում էր ռեալիստական բարձր ստեղծագործություն:

Պետք է ենթադրել, որ նույն երևույթն է տեղի ունեցել նաև ուրարտական գեղարվեստում: Հայտնի է, որ նրանց որմնանկարներում շարքերը ծածկված են իրար հերթագայող նույնատեսակ զարդանկարային մոտիվներով, իսկ ուրարտական թագավորների սաղավարտների, կապարճների և գեղարվեստական բրոնզե մյուս առարկաների վրա գտնում ենք հեծյալների ու մարտակառքերի կրկնվող պատկերներ: Սակայն այդ կանոնականության հետ միասին ուրարտական նկարիչը, չհեռանալով նրանցից, կարող էր ստեղծել և այնպիսի գեղատեսիլ հորինվածքներ, ինչպիսիք են Արգիշտի Ա-ի մեծ դահլիճի պեղումների ժամանակ ի հայտ եկած որմնանկարները:

Եվ այսպես, մեծ դահլիճը Էրեբունիի պալատի այն բարձրակետն է, որտեղ, որմնանկարների հորինվածքային բազմազան կառուցվածքների ճոխության հետ միասին, ի հայտ է գալիս ուրարտական նկարիչների և ընդհանրապես Ուրարտուի գեղարվեստական մշակույթի խիստ ակնառու օժտվածությունը, որով նա իր հաստատուն տեղն ու դերն է նվաճել հին արևելյան գեղանկարչական արվեստում:

**Խալդի աստծու տաճարի որմնանկարները:** Խալդի աստծու մեծ տաճարը՝ բաղկացած երկու սենյակներից, զիկուրատից և երկշարք դասավորված սյուներով սրահից, կառուցվել էր միջնաբերդի հրապարակում և հանդիսանում էր տվյալ ճարտարապետական համալիրի հոյակերտ շինությունը: 1968 թ. զիկուրատի ճակատը մաքրելիս նրա շարվածքում հայտնաբերվեց մի սեպագիր, որտեղ խոսվում է տաճարի շինության մասին:

Այստեղից դժվար չէ եզրակացնել, որ տվյալ կառուցվածքում ի հայտ է գալիս հին արևելյան այն ավանդույթը, ըստ որի զիկուրատներ են կառուցվել միայն այն տաճարներում, որոնք նվիրված էին երկրի գերագույն աստվածությանը:

Այժմ անդրադառնալով տաճարի արտաքին ձևերի ճարտարապետությանը, կարելի է ասել, որ այդ ձևերը ընդհանուր շատ գծեր ունեն ասորա-խեթական ճարտարապետության պալատական նշանավոր շինության՝ Բիտ-խիլանիի հետ (տախտակ 42):

Էրեբունիի տաճարը մյուս շինությունների նման ինչպես արտաքուստ, այնպես էլ ներքուստ հարդարված է եղել ճոխ որմնանկարներով, ինչպես նաև բրոնզե գեղազարդ այնպիսի վահաններով, որոնք հայտնաբերվել են Թեյշեբայինիի պեղումների ժամանակ և Մենուայի որդի Արգիշտի թագավորի կողմից նվիրվել են Խալդի աստծուն:

Ներկայումս այդ որմնանկարների մասին կարելի է գաղափար կազմել թափված կավածեփի վրա պահպանված այն պատառիկներով, որոնք հայտնաբերվել են 1950—55 թթ. պեղումների ժամանակ, ինչպես նաև այն վերակազմություններից, որոնք 1968 թ. կատարվել են մասնակի վերականգնման ենթարկված տաճարի պատերի վրա: Պարզվել է, որ տաճարի ներքնամասը և արտաքին որմնանկարները ունեցել են կառուցվածքային համանման հորինվածքներ, բացառությամբ իրարից տարբերվող մի

քանի եզրազարդերի: Այսպես, ներքնամասի և սյունասրահի պատերն ունեցել են եզրազարդի շերտ՝ աստվածության (Խալդի) պատկերով, ինչպես նաև հարթություն՝ գեղազարդային որմնանկարներով: Դատելով պահպանված պատառիկներից, եզրազարդը իր հորինվածքային և գունազարդման առումով նույնական է եղել միջնաբերդի սյունասրահի արտաքին եզրազարդի հետ: Եզրազարդից ներքև ձգվում է մի շերտ, որի վրա պատկերված է առյուծի վրա կանգնած աստվածը (0,61 մ), նրա աջ ձեռքը բաց ափով բարձրացված է վեր, իսկ ձախը (պահպանվել է մասամբ) երկարել է առաջ և բռնել ինչ-որ ծիսակարգի առարկա: Մորուքավոր գլուխը պսակված է եղջյուրավոր խույրով, խիստ համապատասխան ասորեստանյան թագավորների խույրերին: Գլխարկից ժապավեններ են իջնում թիկունքին:

Ամեն ինչից երևում է, որ նման կերպարանքները պատկերելու համար կեցվածքները, շարժուձևերը և, նույնիսկ, մյուս մանրամասները մշակվել են եղած կանոնների համաձայն:

Կենդանիների վրա կանգնած աստվածների պատկերումը ուրարտական պատկերագրության մեջ հանդիպում է երկու դեպքում, ինչպես այդ ցույց են տալիս Կարմիր բլուրում գտնված բրոնզե գոտիների և կնիքների վրա եղած պատկերները: Աստվածներից մեկը պատկերված է առյուծի վրա կանգնած, դա Խալդին է, իսկ մյուսը՝ Թեյշեբան՝ կանգնած ցուլի վրա և կայծակը ձեռքերին՝ համապատասխան պատերազմի և փոթորիկի աստվածության իր կոչմանը: Ադիլջևազում հայտնաբերվել են վեց խոշոր քարեր, որոնց վրայի բարձրաքանդակներում Թեյշեբա աստծու կերպարանքը պատկերված է ավելի քան երեք մետր բարձրությամբ: Այստեղ կայծակի փոխարեն նա սրբազան ծառի ճյուղ է բռնել (նկ. 5):

Ասորեստանյան պանթեոնում աստվածների ավելի մեծ թիվ է առնչվում կենդանիների հետ: Կրոնների պատմությունից հայտնի է, որ վաղնջական ժամանակներում աստվածները կենդանիների տեսք են ունեցել, և միայն նրանց մարդակերպավորումից հետո է, որ այդ կենդանիները վերածվել են աստվածների խորհրդանիշների, նրանց ուղեկիցների (արբանյակների): Թոփրակկալեում գտնված կնիքի դրոշմի պատկերից դատելով, կարելի է ենթադրել, որ առյուծը, իբրև սրբազան կենդանի, պահվել է ուրարտական տաճարներում:

Այդօրինակ հորինվածքներ (առյուծի վրա կանգնած աստված) հանդիպում են Հին Արևելքի գեղանկարչության և քանդակագործության շատ ստեղծագործություններում: Կարելի է հիշատակել Տել-Խալաֆի սրբավայրի գլխավոր ճակատի արձանախումբը, որը պատկերում է Խեթա-սուբարիական ոլորտի աստվածներին՝ ամպրոպի աստված Տեշուբային, աստվածուհի Խեպետին, արևի աստծուն, ինչպես նաև Բավիանի ասորեստանյան ժայռապատկերները և այլն: Այսպիսով, տվյալ թեմատիկան իր ատավիստական խոր արմատներով Հին Արևելքում որոշ իմաստով ավանդական էր դարձել:

